# ԱԳԻՏԱՏՈՐԻ
# ԲԼՈԿՆՈՏ



ՍԵՊՏԵՄԲԵՐ

17

1964

ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



СОДЕРЖАНИЕ:



Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿԿ Կենտկոմ, II հարկ, 71-րդ սենյակ, հեռախոս 2—52—78

Адрес редакции — Ереван, ЦК КП Армении, II этаж, ком. 71, телефон 2-52-78.

Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

№ 17
ՍԵՊՏԵՄԲԵՐ
1964

ՀԿՊ Կենտկոմի գաղափարական աշխատանքի բաժին

Լույս է տեսնում ամիսը երկու անգամ

ՆՅՈՒԹԵՐ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

# ԱՌԱՋԻՆ ԻՆՏԵՐՆԱՑԻՈՆԱԼԻ ՀԻՄՆԱԴՐՄԱՆ 100-ԱՄՅԱԿԸ

Սովետական ժողովուրդը, եղբայրական սոցիալիստական երկրների աշխատավորները, համայն աշխարհի պրոգրեսիվ մարդկությունը անհուն սիրով նշում են պրոլետարիատի առաջին մասսայական, քաղաքական կազմակերպության, բանվորների միջազգային ընկերության՝ առաջին ինտերնացիոնալի հիմնադրման փառապանծ 100-ամյակը, որի ստեղծողները եղան համաշխարհային պրոլետարիատի մեծ առաջնորդներ և ուսուցիչներ Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը։

Առաջին ինտերնացիոնալի հիմնադրումը բացառիկ կարևոր էտապ էր բոլոր երկրների բանվոր դասակարգի պատմության մեջ։ «Առաջին ինտերնացիոնալը,— գրում էր Վ. Ի. Լենինը,— դրել է սոցիալիզմի համար մղվող պրոլետարական, միջազգային պայքարի հիմքը» (Երկեր, հ. 29, էջ 370)։

Դեռևս անցյալ դարի առաջին կեսերին, խորապես ուսումնասիրելով հասարակության զարգացման օբյեկտիվ օրինաչափությունները և կապիտալիզմին հատուկ խոր հակասությունները, Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը «Կոմունիստական պարտիայի մանիֆեստում» հանգեցին գիտական այն եզրակացության, որ կապիտալիստական հասարակարգի կործանումը և կոմունիզմի հաղթանակը հավասարապես անխուսափելի են։ Այստեղից էլ նրանց կողմից պրոլետարիատին առաջադրը-

ված մարտական խնդիրը՝ միասնական ուժերով տապալել իր դարն ապրած, արտադրողական ուժերի հետագա առաջընթացն արգելակող հին հասարակարգը և ապահովել սոցիալիզմի հաղթանակը։

Առաջին ինտերնացիոնալի համաշխարհային-պատմական ծառայությունն էլ հենց այն է, որ նա բանվորական շարժումը վերածեց միջազգային հզոր ուժի, գիտական կոմունիզմի ռևոլյուցիոն գաղափարների շուրջը համախմբելով աշխատավորական միլիոնավոր մասսաներին։

Անողոք ու դաժան պայքարի մեջ մտնելով բուրժուական և մանրբուրժուական գաղափարախոսությունների, պրուդոնիզմի և տրեդյունիոնիզմի, բակունիզմի ու լասալականության և այլ օպորտունիստական ուսմունքների ու հոսանքների հետ, Մարքսն ու Էնգելսը, նրանց հիմնադրած առաջին ինտերնացիոնալն ամեն կերպ աշխատում էին բարձրացնել պրոլետարիատի քաղաքական գիտակցությունը, նրա մոտ ամրապնդել հասարակության զարգացման դիալեկտիկական-մատերիալիստական ըմբռնումը։ Մարքսի և Էնգելսի անդուլ ջանքերի շնորհիվ առաջին ինտերնացիոնալի շարքերում կոփվեց, դասակարգային պայքարի հիանալի դպրոց անցավ և մարքսիզմին տիրապետեց պրոլետարական ռևոլյուցիոներների մի ամբողջ սերունդ, որը բախտորոշ դեր խաղաց բանվոր դասակարգի մեծ ու ազնիվ պայքարում։ Առաջին ինտերնացիոնալում դասակարգային պայքարի պատմության մեջ առաջին անգամ կիրառվեց գիտական սոցիալիզմը բանվորական մասսայական շարժման հետ միավորելու փորձը, մշակվեց պրոլետարիատի ռևոլյուցիոն պայքարի միասնական տակտիկա տարբեր երկրներում։

Առաջին ինտերնացիոնալի գլխավոր խնդիրները Մարքսը համարում էր բանվոր դասակարգի ազատագրումը, ազգային երկպառակության ոչնչացումը, բոլոր բանվորներին ու աշխատավորներին եղբայրական միասնության, ինտերնացիոնալիզմի ոգով դաստիարակելը։ Դեռևս բանվորների միջազգային ընկերության ծրագրային փաստաթղթերում՝ «Հիմնադիր մանիֆեստում», «Բանվորների միջազգային ընկերության ընդհանուր կանոնադրությունում», «Բրյուսելի կոնգրեսի գլխավոր խորհրդի հաշվետվությունում, «Ժամանակավոր կենտրոնական կոմիտեի պատգամավորներին» հրահանգում և այլն, Մարքսը գիտականորեն հիմնա-





վորում էր, որ բանվոր դասակարգի ազատագրումը միջազգային բնույթի խնդիր է, որ այդ նպատակին հասնելու համար անհրաժեշտ է բոլոր երկրների բանվորների եղբայրական միասնություն, նրանց միջազգային համերաշխություն։

Մարքսիզմի այս կարևորագույն դրույթն իր արտացոլումն ու պրակտիկ կիրառումն ստացավ Փարիզյան կոմունայի ժամանակաշրջանում։ Փարիզյան կոմունան բանվոր դասակարգի մեծագույն նվաճումն էր, այն մարդկային պատմության մեջ առաջին պետությունն էր, որի գլուխ կանգնած էր պրոլետարիատի ռևոլյուցիոն կառավարությունը։

Պրոլետարիատի դիկտատուրայի հաղթանակը, որի համար պայքարում էր Փարիզի կոմունան, մարքսիզմի հիմնադիրները սերտորեն կապում էին տարբեր երկրների բանվորների միջազգային համերաշխության ամրապնդման հետ։ «Ռևոլյուցիան պետք է համերաշխ լինի,— ասում էր Կ. Մարքսը,— և այդ է սովորեցնում մեզ Փարիզյան կոմունայի մեծ փորձը, կոմունա, որն ընկավ այն պատճառով, որ բոլոր գլխավոր կենտրոններում՝ Բեռլինում, Մադրիդում և այլն միաժամանակ չբռնկվեց Փարիզի պրոլետարիատի այդ հզոր ապըստամբության հետ կապված ռևոլյուցիոն մեծ շարժումը» (Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, Վ. Ի. Լենին,. Պրոլետարական ինտերնացիոնալիզմի մասին, էջ 197)։ Մարքսը որոշակիորեն ընդգծում էր, որ մենք մեր մեծ նպատակին, որին ձգտում ենք, կհասնենք միայն այն դեպքում, եթե բոլոր երկրների բանվորների մեջ կայուն կերպով ամրապնդենք պրոլետարիատի միջազգային համերաշխության կենարար սկզբունքը։ Առաջին ինտերնացիոնալն, ինչպես նաև հետագայում ողջ միջազգային կոմունիստական շարժումն իրենց պրակտիկ գործունեության մեջ ղեկավարվել և անշեղորեն ղեկավարվում են Մարքսի այս հանճարեղ ցուցումով։

Առաջին ինտերնացիոնալի պատմական մեծագույն ծառայություններից մեկն էլ այն է, որ նա ինչպես վերոհիշյալ, այնպես էլ մնացած բոլոր սկզբունքային հարցերում գաղափարապես ջախջախեց օպորտունիզմը, ռեֆորմիզմն ու անարխիզմը և նախապատրաստեց մարքսիզմի, որպես պրոլետարիատի ռևոլյուցիոն ուսմունքի հաղթանակը։ Ինտերնացիոնալի այդ դասերն այսօր էլ անգնահատելի նշանակություն ունեն միջազգային կոմունիստական շարժման համար։ Այդ ուղղու-

թյամբ ինտերնացիոնալի հաջող գործունեության համար հսկայական դեր խաղացին Մարքսի և Էնգելսի հանճարեղ աշխատությունները: 1867 թվականին, առաջին ինտերնացիոնալի գործունեության բուռն շրջանում, հրատարակվեց «Կապիտալի» առաջին հատորը: Մարքսիզմի այդ անմահ երկը վիթխարի ներգործություն ունեցավ ինտերնացիոնալի հետագա գործունեության վրա և միջազգային պրոլետարիատին տվեց հզոր զենք սոցիալիզմի համար, ռեֆորմիզմի և բուրժուական գաղափարախոսության դեմ մղվող պայքարում:

Հիրավի մեծ ու անգնահատելի էր բանվորների միջազգային ընկերության գլխավոր խորհրդում Մարքսի և Էնգելսի կատարած աշխատանքը նաև գաղութային և կախյալ ժողովուրդների ազգային-ազատագրական պայքարի հետևողական պրոլետարական քաղաքականություն մշակելու գործում: Նրանք ուշի-ուշով և անսահման համակրանքով հետևում էին Իռլանդիայի ազգային-ազատագրական պայքարին, միաժամանակ մերկացնելով այն քաղաքականությունը, որ վարում էին Անգլիայի կառավարող դասակարգերը: Նրանք անհերքելիորեն ապացուցեցին, թե այդ քաղաքականությունը ինչպիսի ահավոր վնաս է պատճառում հենց բուն անգլիական ժողովրդի առաջընթացի զարգացմանը: «Այն ժողովուրդը, որը հարստահարում է մի ուրիշ ժողովրդի, կռում է իր սեփական շղթաները»— Մարքսի այս թևավոր միտքը կարմիր թելի նման անցնում է ազգային-ազատագրական շարժումների վերաբերյալ մարքսիզմի կլասիկների բոլոր աշխատությունների միջով: Իռլանդիայի փորձի հիման վրա Մարքսն ու Էնգելսն ընդհուպ մոտեցան այն գաղափարին, որ պրոլետարիատի հաղթանակի վճռական պայմաններից մեկը մայրցամաքի պրոլետարիատի ռևոլյուցիոն պայքարի միացումն է գաղութային ժողովուրդների ազգային-ազատագրական շարժման հետ:

Առաջին ինտերնացիոնալը հիմնականում նախապատրաստեց պրոլետարական պարտիաների ձևավորման հիմքերը, դրեց միջազգային կոմունիստական շարժման սկիզբը, որը զարգանալով ամբողջ խորությամբ և լայնությամբ՝ ներկայումս ձեռք է բերել համաշխարհային-պատմական վիթխարի հաղթանակներ: Նրա ռևոլյուցիոն տրադիցիաներն իրենց արտացոլումը և շարունակումը գտան երկրորդ ինտերնացիոնալի այն շրջանի գործունեության մեջ, որը կապված էր Էնգելսի



և Լենինի անունների հետ մինչև այն ժամանակ, երբ այդ ինտերնացիոնալը կանգնեց ռևիզիոնիզմի և սոցիալ-դավաճանության ուղու վրա:

Մարքսի և Էնգելսի հիմնադրած առաջին ինտերնացիոնալի ռևոլյուցիոն պանծալի տրադիցիաները վերածնվեցին և իրենց հետագա զարգացումն ու կատարելագործումը ստացան երրորդ՝ կոմունիստական ինտերնացիոնալի գործունեության, ժամանակակից միջազգային կոմունիստական հզոր շարժման տեսության և պրակտիկայի մեջ:

100 տարի է անցել առաջին ինտերնացիոնալի հիմնադրման օրվանից: Պատմական այդ կարճ ժամանակամիջոցում մարքսիզմի, առաջին ինտերնացիոնալի գաղափարների անմիջական ներգործությամբ ժողովուրդների քաղաքական, տնտեսական ու հասարակական կյանքում տեղի են ունեցել արմատական այնպիսի հեղաշրջումներ, որոնք հիմնովին փոխել են աշխարհի դեմքը: Այդ ժամանակահատվածի ամենամեծագույն պատմական իրադարձությունը Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռևոլյուցիան էր, որով ավարտվեց մարդկության նախապատմությունը և սկսվեց նրա իսկական պատմությունը:

Կոմունիստական պարտիայի և սովետական պետության մեծ հիմնադիր Լենինը գիտական կոմունիզմի հարցերը, պրոլետարիատի ռևոլյուցիոն պայքարի ստրատեգիան ու տակտիկան որոշելիս մշտապես դիմում էր առաջին ինտերնացիոնալի ռևոլյուցիոն պայքարի պատմական փորձին: Անշեղորեն ղեկավարվելով մարքսիզմ-լենինիզմի անմահ գաղափարներով, ՍՄԿՊ-ն իր ողջ գործունեության ընթացքում միշտ հավատարիմ է եղել առաջին ինտերնացիոնալի սկզբունքներին և ռևոլյուցիոն պանծալի տրադիցիաներին, կյանքի է վերածել ինտերնացիոնալի գաղափարները՝ ՍՍՌՄ-ում ապահովելով սոցիալիզմի հաղթանակը, երկիրը դուրս է բերել կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջան:

Երկրորդ համաշխարհային պատերազմում Սովետական Միության վճռական հաղթանակը նպաստավոր պայմաններ ստեղծեց Եվրոպայի ու Ասիայի մի շարք երկրների ժողովուրդների համար՝ տապալելու կապիտալիստների և կալվածատերերի իշխանությունը, դուրս գալու զարգացման սոցիալիստական ուղի: Եթե 1919 թվականին սոցիալիստական աշխարհը զբաղեցնում էր

երկրագնդի տերիտորիայի միայն 16 տոկոսը, իսկ բնակչությունը չէր անցնում 17,8 տոկոսից, ապա այժմ նրան բաժին է ընկնում հողագնդի տերիտորիայի 26 տոկոսը և բնակչության ավելի քան 35 տոկոսը։

Եվրոպայի և Ասիայի երկրներում սոցիալիստական ռևոլյուցիաները նոր, հզոր հարված հասցրին իմպերիալիզմին, արմատապես փոխելով ուժերի հարաբերակցությունը համաշխարհային մասշտաբով։ Ստեղծվեց սոցիալիզմի համաշխարհային սիստեմ ազատ, սուվերեն ժողովուրդների սոցիալական, տնտեսական ու քաղաքական սերտ համագործակցություն, ժողովուրդներ, որոնք ընթանում են սոցիալիզմի և կոմունիզմի ուղիով, միավորված են շահերի ու նպատակների ընդհանրությամբ, միջազգային սոցիալիստական համերաշխության կուռ կապերով։

Սոցիալիզմի համաշխարհային սիստեմը հաստատ ու վստահ կապիտալիստական աշխարհից առաջ է անցնում հասարակական կյանքի հիմնական բնագավառում՝ նյութական արտադրության ասպարեզում։ Եթե 1955 թվականին սոցիալիստական սիստեմի բաժինը համաշխարհային արդյունաբերական արտադրության մեջ կազմում էր 27 տոկոս, ապա այժմ այն մոտենում է 40 տոկոսի։

Հետպատերազմյան տարիներին աշխարհն ապրում է ազգային-ազատագրական բուռն ռևոլյուցիաների դարաշրջան, որոնց հզոր ալիքը սրբում-տանում է գաղութային անիծյալ սիստեմը, հիմնահատակ խախտելով իմպերիալիզմի հիմքերը։ Ասիայի և Աֆրիկայի լայնածավալ տարածություններում նախկին գաղութների և կիսագաղութների տեղում առաջ են գալիս երիտասարդ սուվերեն պետություններ։ Միայն անցած ժամանակաշրջանում հակաիմպերիալիստական, ազգային-ազատագրական ռևոլյուցիաների շնորհիվ աշխարհի քարտեզի վրա երևան են եկել ավելի քան 50 նոր պետություններ։

Կոմունիստական և բանվորական պարտիաների ներկայացուցիչների 1960 թվականի մոսկովյան խորհրդակցության Հայտարարության մեջ ասված է, որ գաղութային ստրկացման սիստեմի խորտակումն իր նշանակությամբ երկրորդ երևույթն է՝ սոցիալիզմի համաշխարհային սիստեմի կազմավորումից հետո։ Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո սկսված այդ պրոցեսը գնալով է՛լ ավելի է խորանում, որովհետև



ինչպես նշված է ՍՄԿՊ ծրագրում, արդի դարաշրջանի հիմնական բովանդակությունը անցումն է կապիտալիզմից սոցիալիզմին, դա սոցիալական և ազգային-ազատագրական ռևոլյուցիաների դարաշրջանն է, իմպերիալիզմի կործանման, գաղութային սիստեմի վերացման դարաշրջանը, համաշխարհային մասշտաբով սոցիալիզմի և կոմունիզմի հաղթանակի դարաշրջանը։

Առաջին ինտերնացիոնալից հետո անցած պատմական հարյուրամյա փորձը լիովին հաստատեց «Բանվորների միջազգային ընկերության ընդհանուր կանոնադրության այն դրույթը, որ «Ունևոր դասակարգերի միացյալ իշխանության դեմ իր մղած պայքարում պրոլետարիատը որպես դասակարգ կարող է գործել միայն առանձին քաղաքական այնպիսի պարտիայի մեջ կազմակերպվելով, որը դեմ է կանգնած ունևոր դասակարգերի ստեղծած բոլոր հին պարտիաներին» (Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, հ. 1, էջ 461)։ Մարքսիզմի հենց այն դրույթը, որ բանվոր դասակարգը միայն իր ռևոլյուցիոն պարտիայի գլխավորությամբ կարող է պայքարը հասցնել մինչև վերջ, դարձավ պրոլետարիատի միջազգային ռևոլյուցիոն շարժման ուղեցույց աստղը։

Մեր ժամանակների ամենաազդեցիկ քաղաքական ուժը համաշխարհային կոմունիստական շարժումն է։ Այդ շարժումն այժմ իրենից ներկայացնում է ռևոլյուցիոն պրոլետարական մոտ 90 պարտիաների մարտական համագործակցություն, որն իր շարքերում ունի ավելի քան 42,5 միլիոն մարդ և իր ետևից տանում է հարյուր միլիոնավոր աշխատավորների։

Արդի պայմաններում, երբ սոցիալիստական ռևոլյուցիաները և ազգային-ազատագրական շարժումները բուռն վերելք են ապրում աշխարհի բոլոր երկրներում, կոմունիստական ու բանվորական պարտիաների առջև հրամայական խնդիր է դրված՝ խորապես ուսումնասիրել և վերլուծել իր երկրի դրությունը ու միաժամանակ հանդես գալ եղբայրական բոլոր պարտիաների հետ սերտ համագործակցությամբ։ Քանի որ սոցիալիզմի և կապիտալիզմի միջև մղվող պայքարն ընդունել է միջազգային մասշտաբներ, անհրաժեշտ է, որպեսզի համաշխարհային կոմունիստական շարժումը ևս հիմնական հարցերում ունենա միջազգային ընդհանուր ծրագիր։ Հենց այդպիսի ծրագիր հանդիսացան կոմունիստական և բանվորական պարտիաների 1957 և 1960

թվականների մոսկովյան խորհրդակցությունների Դեկլարացիան և Հայտարարությունը։

Մինչև վերջ հավատարիմ առաջին ինտերնացիոնալի պանծալի տրադիցիաներին, միջազգային կոմունիստական շարժումն իր սրբազան պարտքը տեսնում է այն բանում, որպեսզի անդուլ կերպով պայքարի մարքսիստական-լենինյան տեսության անաղարտության համար, ամեն կերպ ամրապնդի իր շարքերի և միջազգային պրոլետարիատի միասնությունը։ Ամեն մի ոտնձգություն այդ միասնության նկատմամբ հարված է միջազգային պրոլետարիատի ընդհանուր գործին։ Ահա թե ինչու հաղթահարելով անհատի պաշտամունքի ժամանակաշրջանում թույլատրված սխալները, որոնք քիչ վնաս չհասցրին միջազգային կոմունիստական շարժմանը, ՍՄԿՊ-ն, եղբայրական կոմունիստական ու բանվորական մյուս պարտիաները վճռականապես մերկացնում են Չինաստանի կոմունիստական պարտիայի ղեկավարների պառակտիչ գործողությունները, միահամուռ կերպով պաշտպանելով միջազգային դրության և ժամանակակից ռևոլյուցիոն շարժման ստրատեգիայի և տակտիկայի հիմնական հարցերի վերաբերյալ արդեն ընդհանուր ճանաչում գտած գնահատականները։

Առաջին ինտերնացիոնալը համառ պայքար է մղել բանվորական շարժման միասնության համար։ Այնինչ չինական պառակտիչները ներկայումս քայքայիչ գործունեություն են ծավալում միջազգային կոմունիստական և բանվորական շարժման միասնության դեմ։ Նրանք ընդդեմ մարքսիզմ-լենինիզմի ոչ միայն պրոպագանդում են ձախ ավանտյուրիստական, մանրբուրժուական, նացիոնալիստական գաղափարախոսություն, այլև ձգտում են պառակտել եղբայրական կոմունիստական պարտիաները, նրանց շարքերում ստեղծելով հակապարտիական ֆրակցիոն խմբեր։

Չինաստանի կոմպարտիայի ղեկավարությունը ամեն միջոց գործ է դնում, որպեսզի իր դավաճանական տեսակետը պարտադրի եղբայրական պարտիաներին, կատաղի հարձակումներ է կատարում մարքսիստական-լենինյան պարտիաների և, հատկապես, Սովետական Միության կոմունիստական պարտիայի դեմ։

Չինական ղեկավարները նպատակադրվելով պառակտել արդիականության հիմնական ռևոլյուցիոն ուժերը, արհամարհում են ջերմամիջուկային պատերազմից մարդկությանը փրկելու խնդիրը, փաստորեն



պաշտպանում են միջուկային սպառազինությունների մրցավազքը, պայքարում են դրա մեջ նորանոր տերություններ ներգրավելու համար, իրականացնում են այնպիսի գիծ, որը կարող է հասցնել ատոմային պատերազմի։

Չինական ղեկավարները պայքարի դավաճանական, տրոցկիստական մեթոդներով խարխլում են սոցիալիստական լագերի միասնությունը, Չինաստանն ավելի ու ավելի են անջատում սոցիալիստական երկրներից, թերագնահատում տնտեսական շինարարությունը և արհամարհում կապիտալիզմի երկրների հետ տնտեսական մրցության մեջ սոցիալիստական երկրների խնդիրները։

Եթե առաջին ինտերնացիոնալը պայքարում էր բոլոր երկրների բանվոր դասակարգի շահերի համար, ապա չինական պառակտիչները ամեն կերպ վարկաբեկում են կապիտալիստական երկրների բանվոր դասակարգի և նրա կոմունիստական ավանգարդի պայքարը աշխատավորների կենսական շահերի, խաղաղության ու դեմոկրատիայի համար, մերժում են հակամոնոպոլիստական լայն դաշինքների տակտիկան, սոցիալիստական ռևոլյուցիաների խաղաղ իրականացման հնարավորությունը։

Ռևոլյուցիայի հարցերում չինական ղեկավարները պայքարում են աղանդավորության և պատերազմի համար, անկախ կոնկրետ իրադրությունից նրանք պահանջում են զենքը ձեռքին ավանտյուրիստական ելույթներ ունենալ։ Նրանք շրջանցում են ազգային-ազատագրական ռևոլյուցիայի արդի փուլի էությունը, չեն տեսնում առանձին երկրների դրության տարբերությունը, բոլոր երկրների ժողովուրդներին տալիս են մեկ դեղատոմս՝ զինված պայքար, փորձում են ազգային-ազատագրական շարժումն անջատել սոցիալիստական համագործակցությունից և միջազգային բանվոր դասակարգից, որը միայն ձեռնտու է իմպերիալիստներին և գաղութարարներին։

Պրոլետարիատի ինտերնացիոնալ միասնության համար պայքարը առաջին ինտերնացիոնալի ստրատեգիայի ու տակտիկայի ուղն ու ծուծն էր։ Մարքսը և Էնգելսը սովորեցնում էին, և պատմական փորձն անհերքելիորեն ապացուցել է, որ ամեն մի զիջում նացիոնալիզմին հսկայական վնաս է պատճառում բանվոր դասակարգի ազատագրման մեծ գործին։

Ձգտելով պառակտում մտցնել բանվորական շարժ-

ման զարգացման մեջ, չինական ղեկավարները հետապնդում են իրենց նացիոնալիստական հեգեմոնիստական նպատակները, որոնք ամբողջապես հակասում են ռևոլյուցիոն շարժման արդի էտապի հիմնական շահերին։

Մարքսիստ-լենինյանները շատ լավ հասկանում են բուրժուական նացիոնալիզմի վտանգը ազատագրվող երկրների ժողովուրդների բախտի նկատմամբ։ Դրա համար էլ նրանք վճռականորեն հանդես են գալիս ընդդեմ չինական պառակտիչների ռասայական լոզունգների, որոնց նպատակն է իրենց ազգային-ազատագրության համար պայքարող ժողովուրդներին անջատել միջազգային բանվորական շարժումից, սոցիալիզմի համաշխարհային սիստեմից։ Այսպիսի լոզունգներով նացիոնալիզմը վերաճում է ռեակցիոն ուժի, որը հսկայական վնաս կարող է հասցնել բոլոր ժողովուրդների ազատագրական պայքարին։

Մարքսիզմ-լենինիզմը հաշվի է առնում նացիոնալիստական մնացուկների վտանգը և ընդգծում է նրանց ազդեցության չեզոքացման և նրանց դեմ պայքարի անհրաժեշտությունը։ Սակայն վերջին տարիների փորձը ցույց է տալիս, որ իշխանության գլուխ կանգնած ոչ բոլոր կոմպարտիաներն ընդունակ եղան դիմադրելու նացիոնալիզմի ճնշմանը, վարելու հետևողական ինտերնացիոնալիստական քաղաքականություն։ Մանրբուրժուական ալիքը համակել է չինական կոմպարտիայի ղեկավարությանը և մակերես է շպրտել նացիոնալիզմի ու մեծապետական էգոիզմի կեղտոտ փրփուրը։

Չինական ղեկավարության առանձին սխալները այժմ վերածվել են նացիոնալիստական հայացքների մի ամբողջ սիստեմի։ Այդ է վկայում վերջին շրջանում նրա գործունեությունը, որը փաստորեն հեռացել է պրոլետարական ինտերնացիոնալիզմից և ձգտում է Չինաստանին ենթարկել մյուս սոցիալիստական երկրները։

Հակառակ համաշխարհային կոմունիստական շարժման ընդհանուր կուրսի՝ չինական ղեկավարները աշխատում են առաջին պլան մղել իրենց, այսպես ասած, հատուկ կուրսը, ամեն կերպ ճգնում են սոցիալիստական երկրներին և իրենց ազատության համար պայքարող ժողովուրդներին պարտադրել «չինականացված սոցիալիզմը»։ Նրանք ուլտրառևոլյուցիոն ֆրազների տակ աշխատում են քողարկել իրենց գլխավոր նպատակը՝ կոմունիստական և ազգային-ազատագրական շարժու-



մը ենթարկել իրենց մեծապետական, նեղ եսասիրական շահերին, հանուն որի էլ նրանք կոպիտ կերպով ոտնահարում են պրոլետարական ինտերնացիոնալիզմի վեհ սկզբունքները։ Համաշխարհային կոմունիստական շարժումը, աչքի լույսի պես պահպանելով մարքսիզմ-լենինիզմի մեծ ուսմունքի անաղարտությունը, վճռական հակահարված է տալիս չինական պառակտիչներին։

ՍՄԿՊ-ն, համաշխարհային կոմունիստական շարժումը բանվորների միջազգային փառապանծ ընկերության արժանավոր հաջորդներն են։ ՍՄԿՊ ծրագիրը, որն իրավամբ համարվում է մեր դարաշրջանի կոմունիստական մանիֆեստը, կոմունիստական և բանվորական պարտիաների 1957 և 1960 թվականների խորհրդակցությունների փաստաթղթերը, եղբայրական մարքս-լենինյան պարտիաների տեսական և պրակտիկ գործունեությունն առաջին ինտերնացիոնալի գաղափարների, Մարքսի, Էնգելսի, Լենինի ռևոլյուցիոն ուսմունքի հետագա ստեղծագործական զարգացումն են՝ ժամանակակից պայմաններին համապատասխան։

Առաջին ինտերնացիոնալի ցանած սերմերը հիանալի պտուղներ են տալիս։ Մեծ Լենինը առաջին ինտերնացիոնալի մասին ջերմ սիրով գրում էր. «Նա անմոռանալի է, նա հավիտենական է բանվորների՝ իրենց ազատագրության համար մղած պայքարի պատմության մեջ։ Նա համաշխարհային սոցիալիստական ռեսպուբլիկայի այն շենքի հիմքը դրեց, որ մենք այժմ կառուցելու երջանկությունն ունենք» (Երկեր, հ. 29, էջ 286)։

Առաջին ինտերնացիոնալի հարյուրամյա հոբելյանը նշվում է ամբողջ հողագնդում սոցիալիզմի գաղափարների հաղթական երթի պայմաններում։ ՍՍՌՄ-ում սոցիալիզմի լիակատար և վերջնական հաղթանակը, մեր երկրում կոմունիզմի ծավալուն շինարարությունը, սոցիալիզմի կառուցումը մյուս երկրներում, համաշխարհային սոցիալիստական սիստեմի ավելի ու ավելի վերածվելը հասարակության զարգացման վճռական ուժի՝ այն գաղափարների պրակտիկ մարմնավորումն են, որոնց համար պայքարում էր մարդկության մեծագույն հանճարներ Մարքսի ու Էնգելսի հիմնադրած փառապանծ առաջին ինտերնացիոնալը։

# ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԿՐԹՈՒԹՅՈՒՆԸ ՄԵՐ ԵՐԿՐՈՒՄ

## (Թվեր և փաստեր)

Ժողովրդական կրթությունը հանդիսանում է կոմունիստական պարտիայի հատուկ հոգատարության առարկան: Կենսագործելով մեծ Լենինի պատգամները, կոմունիստական պարտիան հետևողականորեն զարգացնում է ժողովրդական կրթության սիստեմը, ապահովում է ուսուցման ավելի սերտ կապը կյանքի, արտադրության, կոմունիստական շինարարության պրակտիկայի հետ:

Յուրաքանչյուր նոր ուսումնական տարի մի առաջընթաց քայլ է նոր մարդու, կոմունիստական հասարակարգ կառուցողի դաստիարակության ճանապարհին:

☆ *Սովետական պետությունը ոչ մի միջոց չի խնայում մեր ժողովրդի սոցիալ-կուլտուրական պահանջմունքները բավարարելու համար: 1964 թվականին պետական բյուջեով այդ նպատակների համար հատկացված է 32 միլիարդ 800 միլիոն 370 հազար ռուբլի, այդ թվում գիտության, կուլտուրայի և ժողովրդական կրթության զարգացման համար՝ 14,7 միլիարդ ռուբլի:*

☆ *Մեկ աշակերտի վրա Սովետական պետությունը տարեկան ծախսում է 90 ռուբլի, իսկ գիշերօթիկ դպրոցի աշակերտի վրա՝ 700 ռուբլի:*

☆ *Մեկ մարդու ձրի ուսուցումը հանրակրթական դպրոցում, իսկ հետո բուհում, ընտանիքին տալիս է 3,5 հազար ռուբլի լրացուցիչ եկամուտ:*

☆ *ՍՍՌՄ-ում անվճար ուսուցման պայմաններում ուսանողների 75 տոկոսն ապահովված է թոշակով: ԱՄՆ-ում թոշակ է ստանում ուսանողների 11—12 տոկոսը, ԳՖՌ-ում՝ 8,8 տոկոսը:*

☆ *ՍՍՌՄ-ում ուսման տարբեր բնագավառներում ընդգրկված է 64 միլիոնից ավելի մարդ: Միայն հանրակրթական դպրոցներում սովորում են ավելի քան 44 միլիոն մարդ, այդ թվում բանգյուղերիտ դպրոցներում, առանց արտադրությունից կտրվելու սովորում է 4 միլիոն մարդ: Ամենուրեք իրականացվում է անցումը ութամյա ընդհանուր պարտադիր ուսուցմանը:*

☆ *Անցյալ տարի 284 հազար մարդ միջնակարգ կրթություն ստացան բաներիտ և գյուղերիտ դպրոցներում:*

☆ *Յոթնամյակի սկզբին ՍՍՌՄ-ում աշխատող բնակչության 43 տոկոսը ուներ բարձրագույն և միջնակարգ կրթություն: Իսկ 1963 թվականի վերջին այդ թիվը հասավ 50 տոկոսի: Այդ նշանակում է,*



*որ մեր երկրում աշխատող յուրաքանչյուր երկրորդ մարդն ունի բարձրագույն կամ միջնակարգ կրթություն:*

☆ *Բանվորների մոտ 44 տոկոսը, կոլտնտեսականների 26 տոկոսը և ծառայողների ու մասնագետների 92 տոկոսը ունեն միջնակարգ կամ բարձրագույն կրթություն:*

☆ *Ցարական Ռուսաստանում գործում էր միայն 14 համալսարան, իսկ այժմ ՍՍՌՄ-ում գործում է 40 համալսարան: Յուրաքանչյուր միութենական ռեսպուբլիկա ունի իր համալսարանը: Վերջին տարիներին համալսարաններ բացվեցին նաև Բաշկիրիայում, Դաղստանում, Կաբարդինո-Բալկարիայում, Մորդվայում, Յակուտիայում, Նովոսիբիրսկում և Հեռավոր Արևելքում:*

☆ *Վերջին տասը տարում մեր երկրում բացվել են 95 նոր բարձրագույն ուսումնական հաստատություններ:*

☆ *Ուրալում, Սիբիրում, Հեռավոր Արևելքում, Միջին Ասիայում և Ղազախստանում մինչև ռևոլյուցիան կար միայն 4 բուհ: Այժմ գործում է 216 բուհ, որոնցում սովորում են մոտ 800 հազար ուսանողներ:*

☆ *Վերջին տասը տարվա ընթացքում ՍՍՌՄ-ում չտեսնված թափով զարգացել են բարձրագույն և միջնակարգ մասնագիտական դպրոցները: Եթե 1953/54 ուսումնական տարում բուհերում սովորում էր 1 միլիոն 562 հազար ուսանող, ապա 1963/64 ուսումնական տարում՝ 3,3 միլիոն: Բոլոր բուհերում և միջնակարգ մասնագիտական դպրոցներում սովորում է 6,2 միլիոն մարդ, այդ թվում առանց արտադրությունից կտրվելու՝ 3,4 միլիոն մարդ: Ընթացիկ տարում երկրի բուհերը և միջնակարգ մասնագիտական դպրոցները ժողովրդական տնտեսությանը տվեցին 840 հազար մասնագետներ:*

☆ *Բարձրագույն ուսումնական հաստատությունները 10 տարվա ընթացքում պատրաստել են 2 միլիոն 964 հազար մասնագետներ, այդ թվում 1 միլիոն 19 հազար ինժեներներ, 291 հազար գյուղատնտեսության մասնագետներ, 1 միլիոն 143 հազար ուսուցիչներ և 232 հազար բժիշկներ: Այժմ մեր ժողովրդական տնտեսության մեջ ինժեներների թիվը երկու անգամ ավելի է, քան ԱՄՆ-ում:*

☆ *Սովետական Միությունում լուսավորության և կուլտուրայի բնագավառում աշխատում են 6 միլիոն մարդ: Այժմ բարձրագույն, միջնակարգ մասնագիտական, պրոֆտեխնիկական ուսումնական հաստատություններում և դպրոցներում ավելի քան 5 միլիոն սովորողներ ապահովված են թոշակով և հանրակացարաններով:*

☆ *1953—1963 թվականներին միջնակարգ մասնագիտական դպրոցները երկրին տվել են 4 միլիոն 987 հազար մասնագետներ, այդ թվում որպես արդյունաբերության, շինարարության, տրանս-*

պորտի և կապի տեխնիկներ՝ 2 միլիոն, գյուղատնտեսության մասնագետներ՝ 150 հազար։

☆ Վերջին 10 տարվա ընթացքում պրոֆտեխնիկական ուսումնարանները ժողովրդական տնտեսությանը տվել են 6 միլիոն 910 հազար բանվորներ, այդ թվում 2 միլիոն 730 հազար գյուղական մեխանիզատորներ։ Ուսումնարաններն ավարտելուց հետո արդյունաբերության և շինարարության մեջ աշխատելու են մեկնել ավելի քան 4 միլիոն երիտասարդ բանվորներ։

☆ Միայն անցյալ տարի պրոֆտեխնիկական ուսումնարաններն ու դպրոցներն ավարտել են մոտ 900 հազար մարդ։ Այժմ այդ ուսումնարաններում սովորում են բազմաթիվ մասնագիտությունների գծով 1 միլիոն 400 հազար պատանիներ ու աղջիկներ։

☆ Անցյալ տարի պրոֆտեխնիկական ուսումնարաններում պատրաստվել են 12 հազար քիմիայի մասնագետներ, ավելի քան 100 հազար մեքենաշինարարներ, 16 հազար ածխահատներ, 13 հազար մետալուրգներ, 150 հազարից ավելի շինարարներ, 377 հազար տրակտորիստներ, կոմբայնավարներ և գյուղատնտեսության բնագավառի այլ մեխանիզատորներ։

☆ Բուռն թափով զարգանում է նաև մեր ռեսպուբլիկայի ժողովրդական կրթությունը։ Այժմ մեր ռեսպուբլիկայում ուսուցման տարբեր ձևերում ընդգրկված է մոտ 510,5 հազար մարդ։

☆ Ռեսպուբլիկայի բուհերում այժմ սովորում է 29,1 հազար մարդ։ Ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսությունը մեկ տարվա ընթացքում կստանա բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթությամբ 6,9 հազար մասնագետ։

☆ Միայն անցած տարի բուհերը երկրին տվեցին 2910 մասնագետ, այդ թվում՝ 471 ինժեներ։ Տեխնիկումները և մյուս միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատությունները տվեցին ավելի քան 3496 մասնագետ։

☆ Ռեսպուբլիկայի հանրակրթական դպրոցներում սովորում են 450,5 հազար աշակերտ։

☆ Գիշերօթիկ, երկարօրյա դպրոցներում ու խմբերում նոր ուսումնական տարում կսովորեն 16,4 հազարից ավելի աշակերտ։

☆ Ռեսպուբլիկայում գործող միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություններում սովորում են 23,1 հազար մարդ, որը անցյալ տարվանից ավելի է 3 հազարով։

☆ Անցյալ ուսումնական տարում ութամյա կրթություն ստացան 27 հազար, միջնակարգ կրթություն՝ 7 հազար աշակերտներ։



# ԿՐՈՆԱԿԱՆ ՏՈՆԵՐԻ ՄԱՍԻՆ

**Հարց: Ո՞վ է սահմանել կրոնական տոները և ծիսակատարությունները:**

Պատասխան: Ժամանակակից յուրաքանչյուր կրոն մեծ քանակությամբ զանազան ծիսակատարություններ և տոներ ունի։ Կրոնն ուսուցանում է, որ այդ տոներն ու ծիսակատարությունները աստվածային ծագում ունեն, սահմանված են իր՝ աստծու, կամ երկրի վրա նրա պատգամաբերների կողմից, որ նրանք երևան են եկել ճիշտ նույն ձևով, ինչ ձևով գոյություն ունեն ներկայումս, ամենևին չփոփոխվելով իրենց գոյության շատ հարյուրամյակների ընթացքում։

Իրականում բոլորովին էլ այդպես չէ։ Կրոնական ծիսակատարություններն ու տոները բոլորովին էլ երկնային ծագում չունեն։ Նրանք սահմանվել են ոչ թե աստծու, այլ իրենց՝ մարդկանց կողմից։ Տոների և ծիսակատարությունների մեծամասնությունը իրենց սկիզբն են առնում նախնադարյան ժողովուրդների կրոններում։

Պատկերացրեք նախնադարյան մարդկանց կյանքը։ Այն շատ դաժան ու դժվարին էր։ Բնության դեմ մղվող պայքարում անզոր, անզեն, մեր հեռավոր նախնիները գտնվում էին տարերային ուժերի ճնշման տակ։ Մարդիկ չգիտեին, թե նրանց ինչ կբերի վաղվա օրը, սպասում էին տագնապով ու սարսափով։

Կարո՞ղ էր արդյոք մարդն այն ժամանակ հաջողությամբ կռվել բնության ուժերի դեմ, եթե չգիտեր նրա օրենքները, չէր հասկանում պատճառներն այն երևույթների, որոնց հետ նա ստիպված էր բախվել յուրաքանչյուր քայլափոխին, նա չգիտեր, թե ինչու է ցերեկը փոխվում գիշերով, ինչու է ամպը որոտում և կայծակը փայլատակում, ինչից են սկսվում ցրտերը և առաջանում անտառային հրդեհները։

Այդ և շատ ուրիշ երևույթների չհասկանալը, բնության ուժերի հանդեպ նախնադարյան մարդու անզորությունն ու վախը նրա գիտակցության մեջ ծնում էին այն պատկերացումը, որ աշխարհում գոյություն ունեն

ինչ-որ խորհրդավոր, հզոր ուժեր, որոնք կառավարում են ամբողջ երկրային կյանքը, որոնցից կախված է մարդկանց բարեկեցությունը։ Ժամանակի ընթացքում մեր նախնիներն սկսեցին հավատալ, որ այդ ուժերը շնչավորված ուժեր են, որ հատուկ, կախարդական գործողությունների միջոցով նրանց կարելի է սիրաշահել, կարեկցությունը շարժել, տրամադրել դեպի իրենց։ Այդ նպատակի համար նրանք կատարում էին զանազան կախարդական գործողություններ, աղերսանքներ էին արտասանում, զոհաբերություններ էին անում իրենց զորեղ հովանավորներին։ Մարդը դիմում էր ոգիներին, հավատալով, որ դրանով նա կփրկի իր կյանքը, իր տնտեսությունը գերբնական ուժերի անբարյացակամ գործողություններից։

Հատկապես կարևոր է, ինչպես ենթադրում էին հին մարդիկ, ամենազոր ոգիների սիրտը շահել այն օրերին, որոնք կապված էին մարդու կյանքում որոշակի տնտեսական մոմենտների հետ։ Անասնապահական ցեղերի համար մեծ նշանակություն ուներ անասունը դաշտ հանելու, կենդանիները մի արոտավայրից մյուսը փոխադրելու, անասնածնի ժամանակը։

Երկրագործների մոտ վճռական էին վարի, ցանքի, բերքահավաքի օրերը։ Իսկ որսորդների կյանքում մեծ դեր էր խաղում նրանց որսի գնալու ժամանակը։ Նրանց կյանքում կարևորագույն այդ իրադարձություններից առաջ նրանք կոլեկտիվ կերպով դիմում էին իրենց ոգի-աստվածներին խնդրանքով, աղերսանքով զոհաբերություններ էին կատարում, փորձելով նախապես ստանալ նրանց օգնությունը տնտեսական գործերում։ Աստիճանաբար այս բոլոր գործողությունները մարդիկ սկսեցին կատարել տարեցտարի միևնույն ժամանակին, քանի որ տնտեսական աշխատանքների մեծամասնությունը սեզոնային բնույթ ուներ։ Կոլեկտիվ կերպով հզորագույն ոգիներին դիմելու օրերը աստիճանաբար ջոկվում էին սովորական բազմաթիվ օրերից և ժամանակի ընթացքում կրոնական տոների վերածվեցին։

Քրիստոնեական կրոնը շատ տոներ և ծիսակատարություններ ընդօրինակել է նախնադարյան ժողովուրդների կրոններից։ Իհարկե, նրանք զգալի փոփոխություններ են կրել, ստացել են նոր բովանդակու-



թյուն, նոր մեկնաբանում։ Քրիստոնեական տոներն ու ծիսակատարությունները սկսեցին կապվել Քրիստոսի, աստվածածնի, զանազան սուրբ աստվածահաճո անձանց անվան հետ։ Սակայն քրիստոնեական կրոնում որքան էլ կերպարանափոխվել են մեր հեռավոր նախնիների տոները, գրեթե նրանցից ամեն մեկում կարելի է գտնել գծեր, որոնք պահպանվել են նախնադարյան մարդկանց հավատալիքներից։ Օրինակ, իրենից ի՞նչ է ներկայացնում հավատացյալների կողմից լայնորեն մեծարվող այնպիսի մի տոն, ինչպիսին է Եղիայի օրը։ Եկեղեցու սպասավորները պնդում են, որ դա «ճշմարիտ քրիստոնեական տոն է»։ Բայց դա այդպես չէ։ Հենց Եղիա «մարգարեն» քրիստոնեաների կողմից փոխ է առնվել հին հրեական ցեղերի կրոններից, ցեղեր, որոնք մեծարում էին մի աստվածություն, որ նրանց մոտ անվանվում էր պարզապես Էլ կամ Իլ, այսինքն՝ աստված։ Երբ հրեաներն սկսեցին պաշտել Եհովա աստծուն, այդ Իլը նրանց հավատքում Եհովայի նկատմամբ ենթակա տեղ գրավեց։ Նրա անվանը ավելացրին «իա» տառերը, և ստացվեց «Իլիա» («Եղիա»)։ Եղիա մարգարեի մեծարումը հրեաներից էլ հետագայում անցել է քրիստոնեաներին։

Քրիստոնեաները հին ժողովուրդներից են ընդօրինակել նաև այլ աստվածներ, իսկ դրանց հետ միասին՝ երկնային այդ հովանավորներին նվիրված տոները։ Եվ Նիկողայոսի օրը, և սուրբ Գևորգի տոնը, և սուրբ Պանթելեյմոն-դարմանիչը, և մյուս քրիստոնեական տոները իրենցից ներկայացնում են՝ մեր հեռավոր նախնիների կերպարանափոխված, վերամշակված, նոր ձևով մեկնաբանված տոնակատարումները։

Հին հավատալիքների հետքերը կարելի է գտնել նաև ժամանակակից կրոնների ծիսակատարություններում։ Օրինակ, իրենից ի՞նչ է ներկայացնում հավատացյալ մարդկանց աղոթքը։ Դա նախնադարյան մարդու այն կախարդական աղերսանքի կերպարանափոխված ձևն է, որոնցով նա դիմում էր իր ամենահզոր ոգի-աստվածներին։ Մեր հեռավոր նախնիները խոսքին կախարդական ուժ էին տալիս։ Նրանք հավատում էին, որ որոշ խոսքեր, որոնք ուղեկցվում են հատուկ գործողություններով, կարող են ներգործել ոգիների վրա,

ազդել նրանց, օգնել բնության զորեղ տիրակալներից օժանդակություն ստանալու պետքական գործում։ Ժամանակակից եկեղեցական հրահանգներում նշվում է, որ աղոթքի դերն է՝ խնդրել աստծուն իրենց կարիքների մասին և գոհություն հայտնել նրան բարերարության համար։ Բայց չէ՞ որ միևնույն նշանակումն ունեին նախնադարյան մարդկանց աղերսումները։

Քրիստոնեական կրոնում պահպանվել է նաև հին մարդու պատկերացումն այն մասին, որ աղոթքը հատուկ ուժ է ձեռք բերում, եթե այն անընդհատ շատ անգամ կրկնվի։ Իսկ որոշ գործողություններ, որոնցով ուղեկցվում են աղոթքները,— ծնրադրություն, ձեռքեր բարձրացնել և այլն,— քրիստոնեաներն ընդօրինակել են հին եգիպտացիներից՝ հեթանոսներից։ Հին ժողովուրդների հավատալիքների մնացուկ է նաև այնպիսի ծեսը, ինչպես՝ սրբապատկեր համբուրելը։ Դրա հետ միասին ժամանակակից կրոնական տոներում և ծիսակատարություններում տեղ են գտել նաև նոր մոտիվներ։

Կրոնական բոլոր տոների և ծիսակատարությունների հիմքում տեղ են գտել ամենից առաջ հլության, ճակատագրին կույր հնազանդվելու,, համբերության գաղափարները։ Դա լրիվ չափով համապատասխանում է եկեղեցու շահերին։ Չէ որ եկեղեցին հավատացյալներին համոզում էր, որ մարդը մեղքերով լի էակ է, բնականից չնչին մարդը «խղճուկ որդ», «ավազահատիկ» է աստծու հանդեպ։ Միայն տանջանքների ու զրկանքների, համբերության ու հնազանդության միջոցով մարդը կարող է իրեն տեղ աղերսել «աստծու թագավորության մեջ, այն աշխարհում»։ Բանից դուրս է գալիս, որ ժողովրդին հասնող բոլոր չարիքների, աղքատության և իրավազրկության համար, որոնք մինչև օրս գոյություն ունեն բուրժուական երկրներում, մեղավոր են ոչ թե շահագործողները, այլ իրենք՝ աշխատավորները, իրենց «մեղքերով» հանդերձ։

Կրոնական տոների ժամանակ եկեղեցական բեմերից հատուկ ուժգնությամբ քարոզվում է մի այլ գաղափար ևս՝ ընդհանուր սիրո և դասակարգային խաղաղության գաղափարը։ «Բոլոր մարդիկ եղբայրներ են»,— քարոզում են եկեղեցու սպասավորները։ Սակայն կարո՞ղ է արդյոք կապիտալիստին եղբայր լինել բանվորը,



որը մեջք է ծռում իր տիրոջը, դրա դիմաց խղճուկ գրոշներ ստանալով։ Կարո՞ղ է արդյոք կալվածատիրոջը եղբայր լինել հողազուրկ գյուղացին, որը լուսաբացից մինչև մայրամուտ աշխատում է նրա համար։ Նման քարոզները մեկ նպատակ ունեն՝ շեղել աշխատավորներին դասակարգային պայքարից, անարդարացի սոցիալական կարգերը փոխելու ամեն մի փորձից։

Մեր երկրում կրոնական տոներն ու ծիսակատարումները մեծ վնաս են բերում։ Սովետական մարդիկ պայքարում են, որ յուրաքանչյուր մարդ երջանիկ և բերկրալի կյանք ունենա երկրի վրա, իսկ կրոնական տոների օրերին հոգևորականությունը հավատացյալներին կրկին ու կրկին անգամ ներշնչում է, որ ապարդյուն է այս աշխարհում լավագույն կյանքի համար մղվող ամեն տեսակի պայքարը, քանի որ ամեն ինչ գտնվում է բարձրագույնի իշխանության ներքո։ Տերտերներն ասում են, որ մարդիկ պետք է ոչ թե պայքարեն երկրի երեսին լավագույն ապագայի համար, այլ համբերությամբ սպասեն աստծու ողորմածությանը։

Պետք է ասել նաև այն մասին, որ կրոնական տոները մեծ վնաս են պատճառում մեր ժողովրդական տնտեսությանը, քանի որ նրանք հաճախ ուղեկցվում են բանվորների և կոլտնտեսականների աշխատանքի չներկայանալով։ Չէ՞ որ տոնական օրերին, ինչպես ուսուցանում է եկեղեցին, աշխատելը «մեղք» է, և որոշ մարդիկ հետևում են հոգևորականության այդ ցուցումին։

«Պատասխաններ հավատացյալներին» գրքից

# ԲՈՒԼՂԱՐ ԺՈՂՈՎՐԴԻ ԱԶԳԱՅԻՆ ՄԵԾ ՏՈՆԸ

(Թվեր և փաստեր)

(Տպագրվում է Բուլղարիայի ազատագրության 20-րդ տարեդարձի առթիվ)

Սեպտեմբերի 9-ը բուլղար ժողովրդի ազգային մեծ տոնն է: 1944 թվականի այդ օրը Բուլղարիայի աշխատավորները կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ, Սովետական բանակի օգնությամբ տապալեցին միապետական-ֆաշիստական դիկտատուրան և իշխանությունը վերցրին իրենց ձեռքը:

Քսան տարի է, ինչ Բուլղարիայում հաստատվել են ժողովրդական կարգեր: Այդ քսանամյակում բուլղար ժողովուրդը ՍՍՌՄ և մյուս սոցիալիստական երկրների եղբայրական օգնությամբ ձեռք է բերել խոշոր նվաճումներ: Պատմական կարճ ժամանակաշրջանում Բուլղարիան հետամնաց ագրարային երկրից վերածվել է առաջավոր սոցիալիստական պետության՝ իր բարձր զարգացած գյուղատնտեսությամբ, արդյունաբերությամբ ու ժողովրդական կուլտուրայով:

☆ *1948—1963 թվականների ընթացքում, այսինքն 15 տարում, Բուլղարիայի ազգային եկամուտն աճել է 3,24 անգամ։*

*1939 թվականի համեմատությամբ արդյունաբերական արտադրանքի ծավալը այժմ աճել է 17 անգամ։*

☆ *Այժմ միայն 18 բանվորական օրվա ընթացքում Բուլղարիայում արտադրվում է այնքան արդյունաբերական արտադրանք, որքան արտադրվում էր ամբողջ 1939 թվականի ընթացքում:*

☆ *Երկրի արդյունաբերությունը, որը մինչև 1939 թվականը դժվարությամբ էր ապահովում ազգային եկամտի 15 տոկոսը. 1963 թվականին կազմում էր ազգային եկամտի 51 տոկոսը։*

☆ *Անընդհատ բարձրանում է ժողովրդի կենսամակարդակը: 1952 թվականի համեմատությամբ 1963 թվականին այն ավելացել է 2,38 անգամ։*

☆ *Ռեսպուբլիկայում ստեղծված է ժամանակակից մետալուրգիա։ Բուլղարիան Կրեմիկովի խոշոր մետալուրգիական կոմբինատի շահագործումից հետո տարեկան կստանա 5 միլիոն տոննա երկաթահանք, 3900 հազար տոննա չուգուն, 4 միլիոն տոննա պողպատ, 3455 հազար տոննա գլանվածք։ Բուլղարիան բնակչի մեկ շնչի հաշվով կարտադրի 10 անգամ ավելի պողպատ, քան Թուրքիան և Հունաստանը։*



☆ *Ամբողջ 1939 թվականին երկրում արտադրվել է 2,2 միլիոն տոննա քարածուխ, իսկ 1963 թվականին՝ 22 միլիոն տոննա, այսինքն ավելացել է 10 անգամ։*

☆ *Անցյալ տարի Բուլղարիայում արտադրվել է 265 հազար տոննա չուգուն, 461 հազար տոննա պողպատ, 353 հազար տոննա գլանվածք։*

☆ *1939 թվականին էլեկտրիֆիկացված էր միայն 458 քաղաք ու գյուղ, իսկ 1963 թվականին՝ 4673 գյուղ ու քաղաք։ Եթե 1939 թվականին երկրում արտադրվում էր ընդամենը 266 միլիոն կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա, ապա այժմ Բուլղարիայում արտադրվում է 7.182 միլիոն կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա, այնքան, որքան արտադրում են Թուրքիան և Հունաստանը միասին վերցրած։*

☆ *Անցած 20 տարիներին մեծ վերելք է ապրել Բուլղարիայի գյուղատնտեսությունը։ Այժմ Բուլղարիայի դաշտերում աշխատում են 50 հազար տրակտոր (15 ձիաուժի վերածած), 10 հազար կոմբայն և այլն։*

☆ *Սոցիալիստական ռևոլյուցիայի կարևոր նվաճումներից մեկն է կոոպերատիվ կարգի հաղթանակը գյուղում: Այժմ երկրում կան 981 կոոպերատիվ-հողագործական տնտեսություններ։*

☆ *Անցյալ տարի գյուղատնտեսության արտադրանքը, 1939 թվականի համեմատությամբ, ավելացել է 74,5 տոկոսով։*

☆ *Հին կարգերի տիրապետության 65 տարիների ընթացքում Բուլղարիայում միայն 37 հազար հեկտար հող էր ոռոգելի դարձվել, այնինչ 1963 թվականին երկրում ոռոգելի հողերը կազմեցին արդեն 950 հազար հեկտար։*

☆ *Այժմ Բուլղարիայի ազգային եկամտի 74 տոկոսը հատկացվում է ժողովրդի նյութական և կուլտուրական կարիքների բավարարման նպատակներին։*

☆ *Վերջին 15 տարիներին բանվորների և ծառայողների աշխատավարձը աճել է 2,2 անգամ, կոոպերատիվների տարեկան եկամուտները՝ 2 անգամ։*

☆ *Վերջին տասնամյակում աշխատավորների ռեալ եկամուտները կրկնապատկվել են։*

☆ *Այժմ Բուլղարական Ժողովրդական Ռեսպուբլիկայում, 1939 թվականի համեմատությամբ, բնակչության մեկ շնչի համար արտադրվում է բամբակե գործվածք՝ 5,5 անգամ ավելի, բրդե գործվածք՝ 3 անգամ, կոշիկ՝ 6 անգամ, միս և այլ մսամթերք՝ 3,5 անգամ ավելի։*

☆ *Միայն վերջին հինգ տարում քաղաքներում կառուցվել են 18 հազար բնակարան, իսկ գյուղական վայրերում՝ 28.500 բնակելի տներ։*

☆ Վերջին տասնամյակում լուսավորության և կուլտուրայի զարգացման ծախսերը ավելացել են 2 անգամ, առողջապահության և սոցիալական ապահովության ծախսերը՝ ավելի քան 4 անգամ։

☆ Ժողովրդական իշխանության տարիներին Բուլղարիայում կառուցվել է մոտ 2 հազար նոր դպրոց։ Եթե 1939 թվականին կար ընդամենը 5 բուհ, ապա 1962 թվականին երկրում գործում էր 22 բուհ։ Եթե 1939 թվականին յուրաքանչյուր 10.000 բնակչին ընկնում էր 16 ուսանող, ապա այժմ այդ թիվը կազմում է 96։ Այս ավելի է, քան Ֆրանսիայում, Անգլիայում կամ Իտալիայում։

☆ Ամեն տարի Բուլղարիայի բուհերն ավարտում են 6 հազար մասնագետներ, այդ թվում՝ 1500 ինժեներ, 1100 գյուղատնտեսության մասնագետներ, 1000 բժիշկ։

☆ Բուլղարիայի ժողովրդական տնտեսության մեջ զբաղված են բարձրագույն և միջնակարգ կրթությամբ 300 հազար մասնագետներ, ընդ որում նրանց 85 տոկոսը կրթությունը ստացել է 1944 թվականից հետո։

☆ 1944 թվականի սեպտեմբերի 9-ին երկրում կար 243 մանկապարտեզ՝ 11.330 երեխաներով։ Այժմ Բուլղարիայում կա 30 անգամ ավելի մանկապարտեզ, մոտավորապես այդքան էլ ավելի է նրանցում դաստիարակվող երեխաների թիվը։

☆ Եթե 1944 թվականին նախորդած 20 տարիներին բարձրագույն կրթություն են ստացել ընդամենը 22 հազար մարդ, ապա ժողովրդական իշխանության հաստատումից հետո երկու տասնամյակում բարձրագույն կրթություն է ստացել ավելի քան 100 հազար մարդ։

☆ 1942 թվականին երկրում կար մեկ գիտահետազոտական ինստիտուտ՝ 3 գիտաշխատողով։ Այժմ ժողովրդական Բուլղարիայում գործող 108 գիտահետազոտական ինստիտուտներում աշխատում են 3.666 գիտաշխատողներ։

☆ 1939 թվականին գործող 13 թատրոնի փոխարեն այժմ գործում է 46 թատրոն, այդ թվում 5 օպերային թատրոն։

☆ Մինչև երկրորդ համաշխարհային պատերազմը Բուլղարիայում կար ընդամենը 62.577 ռադիոընդունիչ, իսկ այժմ կան 1.225.564 ռադիոընդունիչ և 66.280 հեռուստացույց։

☆ Ժողովրդական Բուլղարիան առևտուր է անում աշխարհի 92 երկրների հետ։

☆ Միայն 1963 թվականին բուլղարական մեքենաներ են ուղարկվել Եվրոպայի, Ասիայի, Աֆրիկայի և Հարավային Ամերիկայի 42 երկրներ։

Ոգևորված Բուլղարական կոմունիստական պարտիայի VIII համագումարի որոշումներով, ռեսպուբլիկայի աշխատավորները այժմ վստահորեն լուծում են իրենց երկրում սոցիալիզմի կառուցումն ավարտելու և աստիճանաբար կոմունիզմի նյութատեխնիկական բազա ստեղծելու մեծ խնդիրը։



# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## 1. Առաջին ինտերնացիոնալի 100-ամյակը

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Կ. *ՄԱՐՔՍ ԵՎ Ֆ. ԷՆԳԵԼՍ*—Կոմունիստական պարտիայի մանիֆեստը։

Կ. *ՄԱՐՔՍ*—Հիմնադիր մանիֆեստ բանվորների միջազգային ընկերության, *տպագրված Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, Ընտիր երկերի առաջին հատորում, էջ 446—457, Հայպետհրատ, 1950։*

Կ. *ՄԱՐՔՍ*.— Բանվորների միջազգային ընկերության ընդհանուր կանոնադրությունը, *տես նույն տեղը, էջ 458—462։*

Վ. *Ի. ԼԵՆԻՆ*—Երրորդ ինտերնացիոնալը և նրա տեղը պատմության մեջ, *Երկեր, հատոր 29, էջ 369—379, Հայպետհրատ, 1951։*

Սովետական Միության կոմունիստական պարտիայի ծրագիրը, *ընդունված ՍՄԿՊ XXII համագումարի կողմից։*

Ն. *Ս. ԽՐՈՒՇՉՈՎ*—Մարքսիզմ-լենինիզմը մեր դրոշն է, մեր մարտական զենքը, *ճառ, արտասանած ՍՄԿՊ Կենտկոմի հունիսյան պլենումում (1963 թ.)։*

## 2. Առաջավոր փորձը բոլորին

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. *Ս. ԽՐՈՒՇՉՈՎ*— Ընդօրինակել լավագույն տնտեսություններին, *ելույթ Կուստանայի մարզի աշխատավորների առջև, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թվականի օգոստոսի 14-ին։*

Ն. *Ս. ԽՐՈՒՇՉՈՎ*—Խորամուխ լինել էկոնոմիկայում, սովորել յուրաքանչյուր հեկտարից վերցնել առավելագույն քանակությամբ արտադրանք, *զրույց Ռոստովի մարզի Զիմովնիկի ձիաբուծարանի ղեկավարների ու մասնագետների հետ, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. օգոստոսի 9-ի համարում։*

Մամուլում գլխավորը նորի, առաջավորի հաղթական պրոպագանդան է, *«Պրավդա»-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. օգոստոսի 14-ի համարում։*

## 3. Երկրին տանք ավելի էժան, ավելի շատ և բարձր որակի արտադրանք

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Պ. Ֆ. ԼՈՄԱԿՈ—ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1964—1965 թվականների կարևորագույն խնդիրներն ու գլխավոր ուղղությունները, ՍՍՌՄ Գերագույն սովետի 3-րդ սեսիայում տված զեկուցումից, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թ. դեկտեմբերի 17-ի համարում։

Արձագանքում են մոսկվացիների հայրենասիրական նախաձեռնությանը, տեղեկատու նյութեր առանց վնասի ու շահութաբեր աշխատելու մասին, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. օգոստոսի 13-ի համարում։

Արտադրել առանց վնասի. «Ս. Հ.»-ի 1964 թ. օգոստոսի 19-ի առաջնորդողը։

## 4. Արդյունավետ օգտագործենք գյուղատնտեսական տեխնիկան

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

ՑԱ. Ն. ԶԱՐՈԲՅԱՆ—Հմտորեն օգտագործել հանքային պարարտանյութերն ու տեխնիկան, ճառ, արտասանած ՀԿՊ Կենտկոմի պլենումում, 1964 թ. մարտի 12-ին, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. մարտի 14-ի համարում։

Ռ. ՓԱՇԻՆՅԱՆ—Տրակտորների տեխնիկական խնամքի նոր կարգը, հոդված, տպագրված «Հայաստանի կոլտնտեսություն» ամսագրի 1964 թ. 7-րդ համարում։

Ջրույցի ընթացքում օգտագործել տեղական փաստեր:

## 5. Կրոնական տոները չարիք են մարդու համար

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Կրոնի ծագման պատճառները, տպագրված «Գիտական աթեիզմի հիմունքները» գրքում, էջ 150—151, Հայպետհրատ, 1963։

Կրոնական տոների և ծիսակատարությունների մասին, տպագրված «Պատասխաններ հավատացյալներին» գրքում, էջ 252—290, Հայպետհրատ, 1963։

Մ. ՄԵԼԻՔՅԱՆ—Զրույց նոր տոների ու սովորույթների մասին, տպագրված «Ագիտատորի բլոկնոտ»-ի 15-րդ համարում։



## ՆՈՐ ԳՐՔԵՐ

Գ. ՄԿՐՏՉՅԱՆ, Թեորիայի և պրակտիկայի կապի մասին, 135 էջ, տպաքանակ 2000, գինը 14 կոպ.։

Ներկա աշխատության նպատակն է շարադրել մարքս-լենինյան ուսմունքը թեորիայի ու պրակտիկայի օրգանական կապի վերաբերյալ և ցույց տալ այդ կապի նշանակությունը սոցիալիստական ու կոմունիստական հասարակության կառուցման գործում, ցույց տալ, որ ՍՄԿՊ նոր ծրագիրը հանդիսանում է պարտիայի նախորդ երկու ծրագրերի թեորիայի ու պրակտիկայի ընդհանրացումը, ինչպես և գիտական կոմունիզմի թեորիայի և պրակտիկայի մարմնավորումը: Աշխատությունը նախատեսված է մարքսիզմ-լենինիզմի թեորիան ինքնուրույն ուսումնասիրողների համար։

ՆԻԿՈՂԱՅ ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ, Ազգային ազատագրական պայքարը Իրաքում 1943—1963 թթ., 227 էջ, տպաքանակ 1000, գինը 80 կոպ.։

Աշխատության մեջ արաբական, անգլիական, հայկական և ռուսական աղբյուրների հիման վրա լուսաբանվում են Իրաքի սոցիալ-տնտեսական վիճակը, հետամնացության պատճառները և օտարերկրյա իմպերիալիզմի տիրապետության հետևանքները: Զգալի տեղ է հատկացված ազգային փոքրամասնությունների՝ հայերի և քրդերի մասնակցությանը ազգային-ազատագրական պայքարին։

ԱԼ. Ս. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ, Գիշով և ավինով, 66 էջ, տպաքանակ 3000, գինը 4 կոպ.։

Գրքույկի հեղինակն ակնարկի ձևով պատմում է Սովետական Միության Հայրենական մեծ պատերազմի ժամանակ Սովինֆորմբյուրոյի զինծղթակից, Լենինի շքանշանակիր մայոր Մկրտիչ Հովհաննեսի Լիլոյանի անցած մարտական փառավոր ուղու և քաջի մահով նրա զոհվելու հետ կապված իրադարձությունների մասին։

ԿԱՄՍԱՐ ԱՎԵՏԻՍՅԱՆ, Արևելքի մարգարիտը, 274 էջ, տպաքանակ 10.000, գինը 61 կոպ.։

Սույն գրքի էջերն ընթերցողին պատմում են արթնացող Արևելքի երկրներից մեկի՝ Հնդկաստանի մասին։

Հեղինակին վիճակվել է լինելու Հնդկաստանի մեծ ու փոքր քաղաքներում, նրա ազգային մշակույթի կենտրոններում, գյուղերում, մոտիկից ծանոթանալու հնդիկ ժողովրդի անցյալին ու ներկային։

Հնդկական քաղաքները, ինչպես և ողջ Հնդկաստանը, լի են հակադրություններով: Գրքում նկարագրվում են շքեղ ու արդիական ժամանակակից քաղաքները և հնադարյան կավածեփ հյուղակներով գյուղերը, քաղաքային վերնախավի փարթամ կյանքը և պարիաների ու կուլիների խղճուկ վիճակը։ Երկրի պատմության ու բնության, մարդկանց, նրանց կենցաղի, հոգևոր ու նյութական մշակույթի մասին տրվում են հարուստ ու հետաքրքրական տեղեկություններ։

ԻՆԴԵՔՍ՝ 77704

ОТДЕЛ ИДЕОЛОГИЧЕСКОЙ РАБОТЫ
ЦК КП АРМЕНИИ

# Агитатори блокнот

## № 17

## 1964

Խմբագիր՝ Վ. Խ. ԵՆԳԻԲԱՐՅԱՆ

ՎՖ 08443 Պատվեր 671 Տիրաժ 8977

Հանձնված է արտադրության 24/VIII 1964 թ.։
Ստորագրված է տպագրության 31/VIII 1964 թ.։

ՀՍՍՌ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի
պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության II տպարան,
Երևան, Կնունյանցի № 8։

Գինը 8 կոպ.։